# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ





ՆՈՅԵՄԲԵՐ

21

1964

# ՓԱՌՔ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԵՐՈՍ ՏԻԵԶԵՐԱԳՆԱՑՆԵՐԻՆ



Վ. Մ. ԿՈՄԱՐՈՎ



Կ. Պ. ՖԵՈԿՏԻՍՏՈՎ



Բ. Բ. ԵԳՈՐՈՎ

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 21
ՆՈՅԵՄԲԵՐ
1964

ՀԿՊ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ

ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ԵՎ ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԱԶԳԱՅԻՆ ՎԵՐԱԾՆՈՒԹՅԱՆ ՄԵԾ ՏՈՆԸ

Այս տարվա նոյեմբերի 29-ին հայ ժողովուրդը մեծագույն խանդավառությամբ տոնելու է իր ազգային վերածնության, Հայաստանում սովետական կարգեր հաստատվելու 44-րդ տարեդարձը։ Սովետական Հայաստանն իրավամբ համարվում է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի ծնունդը, ռևոլյուցիա, որը իրականացրեց ցարիզմի կողմից ճնշված ու հալածված ազգերի, այդ թվում նաև հայ ժողովրդի դարավոր իղձերը, կենսագործեց ժողովուրդների իրավահավասարության ու բարեկամության, սոցիալիզմի, խաղաղության մեծ գաղափարները։

Հայաստանում սովետական կարգերի հաստատման շնորհիվ հայ ժողովուրդը ձեռք բերեց ինքնուրույն պետականություն, ազգային անկախություն, նա ծաղկեց ու բարգավաճեց սոցիալիստական ազգերի եղբայրական ընտանիքում։

Ներկայումս Սովետական Հայաստանը դարձել է ՍՍՌՄ առաջավոր սոցիալիստական ռեսպուբլիկաներից մեկը, որտեղ աննախընթաց զարգացում են ապրում ժողովրդական տնտեսությունը, գիտությունն ու կուլտուրան, արվեստն ու գրականությունը։

Հայ ժողովրդին միշտ չէ, որ հաջողվել է աշխատել և ստեղծագործել, տնօրինել իր բախտը այնպես, ինչպես այժմ։ Նախասովետական շրջանում ող-

բերգական է եղել նրա վիճակը։ Օտարերկրյա բազմաթիվ նվաճողներ բազում անգամ ավերակների ու մոխրակույտերի են վերածել նրա շեն քաղաքներն ու գյուղերը։ Երկիրը ասպատակել, հրի ու սրի են մատնել հռոմեական ու բյուզանդական կայսրությունների, օսմանական Թուրքիայի, պարսից պետության, մոնղոլաթաթարական հորդաները։

Հայ ժողովրդի վիճակն ավելի վատացավ արևմտյան իմպերիալիստների վարձկան դաշնակցականների տիրապետության օրոք։ Ժողովրդի արգահատելի թշնամիները՝ դաշնակները Հայաստանը հասցրին ծայրահեղ աղքատության, փլուզման։ 1913 թվականի համեմատությամբ 1919 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքը կրճատվեց ավելի քան 12 անգամ, ամբողջովին դադարել էին գործելուց պղնձահանքերը, գյուղատնտեսական արտադրանքը պակասեց 5—6 անգամ, ամեն օր հարյուրավոր մարդիկ մեռնում էին սովից և հիվանդություններից։ Հայ ժողովրդի ֆիզիկական գոյությունը վտանգի տակ էր դրված։

Այդ ծանր օրերին (1918 թ. հոկտեմբեր) Սերգո Օրջոնիկիձեն հեռագրով Վ. Ի. Լենինին հաղորդել է, որ Հայաստանի դրությունը ողբերգական է։ Երևանի նահանգի երկու գավառների փոքրիկ պատառիկի վրա կուտակվել են ավելի քան 600 հազար գաղթականներ, որոնք մասսայաբար մեռնում են քաղցից ու ժանտախտից։ Գրաված գավառներում թուրքերը կոտորել են բնակչության կեսը։ Դաշնակների մեղքով անլուր զրկանքներ, անհաշիվ տառապանքներ կրած հայ ժողովուրդը փրկության ելք էր որոնում, և նա հանձին Սովետական Ռուսաստանի շուտով գտավ իր փրկության ելքը։ Ռուս մեծ ժողովրդի օրինակով, նրա եղբայրական օգնությամբ հայ ժողովուրդը պայքարի դրոշ բարձրացրեց անարգ կեղեքիչների դեմ և 1920 թվականի նոյեմբերի 29-ին տապալեց դաշնակների տխրահռչակ կառավարությունը։ Բանվոր դասակարգը, աշխատավոր գյուղացիությունը կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ Հայաստանում հռչակեցին սովետական իշխանություն։

Հայաստանի աշխատավորների տարած հաղթանակը մեծ ուրախություն պատճառեց հարազատ կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության ստեղծող Վ. Ի. Լենինին։ Նա ջերմորեն ողջունեց այդ







հաղթանակը և իր սեփական նախաձեռնությամբ խնդիր դրեց անմիջապես նյութական օգնություն ցույց տալ Սովետական Հայաստանին։ Սովետական Ռուսաստանի կառավարության կողմից ազատագրված Հայաստանին անմիջապես օգնություն ցույց տրվեց։

Սովետական իշխանության տարիներին մեծագույն հաջողությունների հասան մեր ռեսպուբլիկայի աշխատավորները։ Կենսագործելով մեծ Լենինի մշակած նոր տնտեսական քաղաքականությունը, ռեսպուբլիկայի աշխատավորները կարճ ժամանակաշրջանում ոչ միայն վերականգնեցին ավերված ժողովրդական տնտեսությունը, այլև ստեղծեցին արդյունաբերության նոր ճյուղեր, կառուցեցին էլեկտրակայաններ, ջրանցքներ։

Այժմ մեր ռեսպուբլիկայի աշխատավորներն իրենց ազատագրության 44-րդ տարեդարձը դիմավորում են նոր և ավելի պանծալի հաջողություններով։ Եթե 1913 թվականին Հայաստանում էլեկտրաէներգիայի արտադրությունը եղել է 5,1 միլիոն կիլովատ-ժամ, ապա միայն 1964 թվականի 9 ամսում այն հասել է 2 միլիարդ 157 միլիոն կիլովատ-ժամի։ Մեկ շնչի հաշվով Սովետական Հայաստանում ավելի շատ էլեկտրաէներգիա է արտադրվում, քան մի շարք առավել զարգացած կապիտալիստական երկրներում՝ Ճապոնիայում, Ֆրանսիայում, Իտալիայում և շատ ուրիշ երկրներում։ Վերջին տարիներս ավելի է ընդլայնվել ռեսպուբլիկայի էներգետիկ բազան։ Եթե 3—4 տարի առաջ ռեսպուբլիկայում էլեկտրաէներգիա էր ստացվում միայն հիդրոէլեկտրակայաններից, ապա այժմ այն ստացվում է նաև ջերմաէլեկտրակայաններից։ Արդեն շահագործման են հանձնվել Երևանի ջերմաէլեկտրակայանի չորս ագրեգատները՝ յուրաքանչյուրը 50 հազար կիլովատ կարողությամբ։ Առաջիկայում շահագործման կհանձնվեն նաև Երևանի ջերմաէլեկտրակայանի մյուս ագրեգատները, ինչպես նաև կավարտվի Կիրովականի և Հրազդանի ջերմաէլեկտրակայանների կառուցումը։ Ուժեղ թափով առաջ է գնում Տաթևի հիդրոէլեկտրակայանի կառուցումը։ Ջերմաէլեկտրակայանների և նոր հիդրոէլեկտրակայանների կառուցումը հնարավորություն կտա աստիճանաբար նվազեցնել Սևանա լճից ջրի բացթողումը։

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները նշանակալից հաջողություններ են ձեռք բերել արդյունաբերության

զարգացման բնագավառում։ Յոթնամյակի անցած հինգ տարում ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրության ծավալը նախատեսված 64,6 տոկոսի դիմաց աճել է 67,6 տոկոսով։ Պլանից ավելի է արտադրվել 148 միլիոն ռուբլու արտադրանք։ Ձեռնարկություններում նույն ժամանակամիջոցում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 22 տոկոսով։

Այս տարի, անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, արդյունաբերական արտադրանքի ինն ամսվա աճը կազմել է 7 տոկոս։

Ռեսպուբլիկայում հատկապես արագ տեմպերով են զարգացել քիմիական, էլեկտրատեխնիկական, ռադիոէլեկտրոնային, հանքային արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան, մեքենաշինությունը և գործիքաշինությունը։

Ինչպես հայտնի է, նախասովետական Հայաստանում քիմիական արդյունաբերություն չի եղել, այնինչ այժմ մեր ռեսպուբլիկայում կան տասնյակ քիմիական ձեռնարկություններ, որոնք երկրին տալիս են սինթետիկ կաուչուկ, արհեստական թելեր, հանքային պարարտանյութեր, ավտոդողեր, ներկեր, ռետինատեխնիկական իրեր, ծծմբաթթու և ժողովրդական տնտեսության զարգացման համար շատ այլ ուրիշ նյութեր։ Միայն անցյալ տարի, 1958 թվականի համեմատությամբ, ռեսպուբլիկայում քիմիական արդյունաբերությունն աճել է 2,1 անգամ, ըստ որում սինթետիկ նյութերի արտադրությունն ավելացել է 7 անգամ։ Միայն այս տարվա ինն ամսում արտադրվել է 27,5 հազար տոննա կաուստիկ սոդա, 5.016 տոննա արհեստական և սինթետիկ թել, 495,1 հազար տոննա արհեստական և սինթետիկ մետաքս, 869 հազար հատ ավտոդող։

Անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ ավելի են արտադրվել բույսերի պաշտպանության քիմիական միջոցներ՝ ներգործող նյութի վերածած՝ 178 տոննա, արհեստական և սինթետիկ թել՝ 1.815 տոննա, ավտոդող՝ 15 հազար հատ, կաուստիկ սոդա՝ 1.575 տոննա և այլն։

Արդյունաբերական արտադրության ծավալի աճը ձեռք է բերվել ինչպես արտադրական պրոցեսների ինտենսիվացման, նոր տեխնիկայի ներդրման, ներքին ռեզերվների լավագույն օգտագործման, այնպես էլ արտա-



դրական նոր կարողությունների գործարկման հաշվին։

Գնալով անընդհատ ավելանում է Սովետական Հայաստանի ձեռնարկությունների թիվը։ Յոթնամյակի հինգ տարում գործարկվել են 90 արդյունաբերական ձեռնարկություններ, ինչպես նաև 91 խոշոր արտադրամասեր։ Հատկապես ընդլայնվել է հաստոցաշինական և սարքաշինական արդյունաբերության բազան։ Ներկայումս ռեսպուբլիկայում կան 12 հաստոցաշինական գործարաններ՝ 1959 թվականին եղած 2-ի դիմաց ու սարքաշինության և ռադիոէլեկտրոնային արդյունաբերության 11 ձեռնարկություն՝ մի քանի տարի առաջ եղած 4-ի փոխարեն։ Անցած հինգ տարում յուրացվել է ժամանակակից արդյունաբերական արտադրանքի ավելի քան 500 նոր տեսակների արտադրությունը։ Այս տարվա ինն ամսում Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվել են մոտ 10 հազար գյուտ և ռացիոնալիզատորական առաջարկ։ Դրանց արմատավորումից ստացված տնտեսումը տարվա հաշվով կազմում է մոտավորապես 8 միլիոն ռուբլի։

Ուրախալի է իմանալ, որ յոթնամյակի տարիներին ռեսպուբլիկայում ստեղծված գիտական, էքսպերիմենտալ և կոնստրուկտորական բազայի շնորհիվ հաջողությամբ լուծվում են տեխնիկական բարդ խնդիրներ։ Այդ է պատճառը, որ բուռն թափով աճում է մեքենաշինությունը և տարեցտարի ավելանում է մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրանքի, այն էլ գլխավորապես բարդ մեքենաների ու սարքերի, արտահանությունը։ Ներկայումս Սովետական Հայաստանը 100 անուն արդյունաբերական արտադրանք է արտահանում աշխարհի 57 երկրներ։

Անցած ինն ամսում մեր ռեսպուբլիկայում արտադրվել են 562 հազար կիլովատ փոփոխական հոսանքի էլեկտրաշարժիչ, 971 հազար կիլովատ փոփոխական հոսանքի գեներատոր, 527,4 հազար կիլովատ շարժական էլեկտրակայան, 3.402 հազար կիլովատ-ամպեր ուժային տրանսֆորմատոր և շատ այլ տեսակի մեքենաներ, հաստոցներ ու սարքեր։

Խոշոր աշխատանք է կատարվել կապիտալ շինարարության բնագավառում։ Միայն վերջին երկու տարում Սովետական Հայաստանում կառուցվել և շահագործման են հանձնվել ավելի քան 48 արտադրական ձեռնարկություններ ու խոշոր աշխատամասեր։

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները իրավամբ կարող են պարծենալ սննդի իրենց արդյունաբերությամբ։ Եթե նախասովետական Հայաստանում գոյություն ուներ միայն ոգելից խմիչքների արտադրություն, ապա սովետական իշխանության տարիներին ռեսպուբլիկայում բուռն թափով զարգացան սննդի արդյունաբերության բազմաթիվ ճյուղեր։ Անցյալ տարի մեր ռեսպուբլիկան երկրին տվեց 94,6 միլիոն պայմանական տուփ պահածո, իսկ այս տարվա ինն ամսում՝ 108,6 միլիոն պայմանական տուփ պահածո, 8.107 տոննա մակարոնեղեն, 31,1 հազար տոննա անարատ կաթնամթերք (կաթ, շոռ, մածուն, սերուցք, թթվասեր և այլն), 10,3 հազար տոննա հրուշակեղեն, 6.153 տոննա պանիր (առանց կոլտնտեսությունների և բնակչության տնային արտադրության), 4.497 տոննա երշիկեղեն, 2.342 տոննա յուղ (առանց կոլտնտեսությունների և բնակչության տնային արտադրության) և այլն։

Խոշոր հաջողություններ են ձեռք բերվել թեթև արդյունաբերության զարգացման բնագավառում։ Եթե նախասովետական Հայաստանը ունեցել է միայն գորգի և կոշիկի մի քանի տնայնագործական փոքրիկ արհեստանոցներ, ապա այժմ Սովետական Հայաստանն ունի ժամանակակից տեխնիկայով զինված և բարձր զարգացման հասած թեթև արդյունաբերություն։ Սովետական Հայաստանի թեթև արդյունաբերության ձեռնարկությունները ներկայումս երկրին տալիս են ոչ միայն միլիոնավոր մետր մետաքսե, բրդե, բամբակե կտորեղեն, այլև տասնյակ հազարավոր մետր արհեստական և սինթետիկ թելերից պատրաստված կտորեղեն ու հագուստեղեն։ Միայն այս տարվա ինն ամսում ռեսպուբլիկայում արտադրվել է 49,4 միլիոն քառակուսի մետր գործվածք, որից 5,4 միլիոն քառակուսի մետրը մետաքսե կտոր, 33,1 միլիոն զույգ գուլպեղեն, 2 միլիոն 510 հազար հատ տրիկոտաժե վերնազգեստ, 1 միլիոն 770 հազար հատ ժամացույց, 5 միլիոն 174 հազար զույգ կաշվե կոշիկ և այլն։

Սովետական Հայաստանի 44-րդ տարեդարձը նշանակալի հաջողություններով են նշանավորում Երևանի արդյունաբերության աշխատողները։ Այս տարվա անցած ինն ամսում, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, Երևանի արդյունաբերական ձեռնարկությունների համախառն արտադրանքի աճը կազմեց 8 տոկոս, իսկ քիմիական արդյունաբերության



գծով 25 տոկոս։ Նույն ժամանակամիջոցում աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը կատարվել է 103,6 տոկոսով։ Ինն ամսվա ընթացքում պլանից ավելի է թողարկվել 23 միլիոն ռուբլու արտադրանք, որից աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին՝ 17 միլիոն ռուբլու։ Արտադրանքի իջեցումից տնտեսվել է 6 միլիոն 845 հազար ռուբլի։

Զարգանում է նաև մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը։ Սովետական Հայաստանի գյուղատնտեսության աշխատողները ոչ մի ջանք չեն խնայում պարտիայի առաջադրած խնդիրները մինչև վերջ կենսագործելու, մեր երկրում մթերքների անսպառ առատություն ստեղծելու համար։

Ռեսպուբլիկայում հացահատիկային կուլտուրաների գնումների պլանը 1963 թվականին կատարվեց 104 տոկոսով, բոստանային պարենային կուլտուրաների մթերման պլանը՝ 129 տոկոսով։ Անցյալ տարի մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները արտադրեցին միս (սպանդանոցային քաշով)՝ 38,1 հազար տոննա, կաթ՝ 335,9 հազար տոննա, ձու՝ 173 միլիոն հատ, բուրդ՝ 4 հազար 405 տոննա։ Միևնույն ժամանակ 1963 թվականին պետությանը վաճառվել է անասուն ու թռչուն (կենդանի քաշով)՝ 35 հազար տոննա, կաթ՝ 147,3 հազար տոննա, ձու՝ 51,2 միլիոն հատ, բուրդ՝ 4 հազար տոննա։

Ռեսպուբլիկայում մեծ աշխատանքներ են կատարվում գյուղատնտեսությունը ժամանակակից տեխնիկայով զինելու ուղղությամբ։

Միայն 1963 թվականի ընթացքում մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը ստացել է 1.046 տրակտոր (ֆիզ. միավոր) կամ 1.915 տրակտոր՝ 15 ուժանոցի վերածած, 1.160 բեռնատար ավտոմեքենա, 150 հացահատիկային կոմբայն, 69 սիլոսահավաք, 16 ճակնդեղահավաք կոմբայն, կթի 122 հարմարանք և այլն։

1963 թվականին ամբողջությամբ վերցրած մեր ռեսպուբլիկայի հանրային դաշտերում աշխատում էին 5.544 տրակտոր, 1.393 հացահատիկային, 387 սիլոսային կոմբայն, 6.026 բեռնատար ավտոմեքենա և հազարավոր այլ մեքենաներ։ Կոլտնտեսություններում և սովխոզներում հասկավոր կուլտուրաների վարը, ցանքը, բերքահավաքը համարյա ամբողջապես մեքենայացված

է։ Մեքենայացման մակարդակը բարձր է նաև բամբակի ու շաքարի ճակնդեղի վարի, ցանքի ու մշակության գործում։

1964 թվականի անցած ամիսներին ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունն ստացել է 1.170 տրակտոր (ֆիզ. միավոր), 230 հացահատիկային կոմբայն, 650 ավտոմեքենա, 850 շարքացան, 550 կուլտիվատոր, 600 գութան, 600 խոտհնձիչ մեքենա, 60 խոտի մամլիչ և այլ բազմաթիվ ու բազմատեսակ գյուղատնտեսական գործիքներ ու մեքենաներ։

Մինչև 1964 թվականի վերջը գյուղատնտեսության կարիքների համար կհատկացվի 132.640 տոննա հանքային պարարտանյութ։ 1965 թվականին այդ թիվը կհասնի 170 հազար տոննայի։

Մեր ռեսպուբլիկայում հատուկ ուշադրություն է դարձվում ոռոգման աշխատանքներին։ Բավական է ասել, որ 1920 թվականի համեմատությամբ ռեսպուբլիկայում ոռոգելի տարածությունն ավելացել է 4,5 անգամ։ Միայն յոթնամյակի 5 տարիներին լրացուցիչ ջուր է տրվել 108 հազար հեկտար արոտավայրերի։

Հաստատված ժողովրդատնտեսական պլանի համաձայն մինչև 1964 թվականի վերջը ջրատնտեսական շինարարական-մոնտաժային աշխատանքների ծավալը, 1963 թվականի համեմատությամբ, կավելանա 60 տոկոսով։

Արդեն հաջորդ տարի շահագործման կհանձնվեն Մանթաշի ջրամբարը, Նոյեմբերյանի, Գետափ-Աղավնաձորի, Այրում-Ճոճկանի, Կապսի, Գյուլիբուլաղի, Լալագյուղ-Ուզունթալայի և մյուս ջրհան կայանները։ Նախագծված միջոցառումների շնորհիվ ոռոգելի հողերի տարածությունը ռեսպուբլիկայում 1964—1965 թվականներին կավելանա 15 հազար հեկտարով, իսկ լրացուցիչ ջուր կստանան 40 հազար հեկտար արոտավայր։ 1966—1970 թվականներին նախատեսվում է նոր ոռոգելի հողերի տարածությունն ավելացնել 93 հազար հեկտարով, բարելավել 26 հազար հեկտար տարածության ջրապահովվածությունը և լրացուցիչ ջուր տալ 130 հազար հեկտար արոտավայրերի։

Գյուղատնտեսական արտադրության հետագա ինտենսիվացման միջոցառումների իրագործումը ստեղծում է լայն հնարավորություններ գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու համար։



Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները մեծ Հոկտեմբերի 47-րդ տարեդարձի և Հայաստանում սովետական կարգերի հաստատման 44-րդ տարեդարձի պատվին ծավալելով սոցիալիստական մրցություն, ձեռք են բերել որոշակի հաջողություններ։ Կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատավորները այս տարի 8.141 հեկտարով ավելի շատ գարնանացան հացահատիկային կուլտուրաներ ցանեցին, քան 1963 թվականին։ Գցվել են շուրջ 1.360 հեկտար պտղատու և 360 հեկտար խաղողի նոր այգիներ։ Այժմ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները ունեն 423.330 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, այդ թվում՝ 137.675 կով, մեկ միլիոն 471 հազար 291 մանր եղջերավոր անասուն։

Այս տարվա միայն անցած 9 ամիսներին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները պետությանը վաճառել են 139 հազար 125 տոննա կաթ, 47.533 հազար հատ ձու, 38.838 ցենտներ բուրդ, 297.927 ցենտներ միս և այլն։

Նշանակալի հաջողություններ են ձեռք բերված նաև հացահատիկի, բանջարա-բոստանային կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու ուղղությամբ։ Անցած 9 ամիսներին արտադրվել են ցորեն՝ 2 միլիոն 49 հազար 924 ցենտներ, ծխախոտ՝ 119 միլիոն 195 հազար թելամետր։ Այդ նույն ժամանակ մթերվել են կարտոֆիլ՝ 8.946 տոննա, բոստանային կուլտուրաներ՝ 28.454 տոննա, բանջարեղեն՝ 96 հազար տոննա, շաքարի ճակընդեղ՝ 78.734 տոննա և այլն։

Կոմունիստական պարտիան և սովետական կառավարությունը իրենց գլխավոր խնդիրներից մեկը համարում են աշխատավորների նյութական բարեկեցության անշեղ բարձրացումը։ Ամեն ինչ արվում է, որպեսզի սովետական մարդիկ ավելի լավ ապրեն։

Կենսագործելով ՍՄԿՊ ծրագիրը, Սովետական Հայաստանի աշխատավորները հսկայական հաջողությունների են հասել ժողովրդական տնտեսության, գիտության ու կուլտուրայի զարգացման և ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման գործում։

Բնորոշ է, որ անցած հինգ տարում ռեսպուբլիկայում պետական կապիտալ ներդրումները կազմել են 1 միլիարդ 68 միլիոն ռուբլի։ Միայն 1963 թվականին կա-

տարվել է 289 միլիոն ռուբլու կապիտալ շինարարություն։ Ռեսպուբլիկայում ծավալվում է բնակարանային շինարարությունը։ Անցյալ տարի միայն Երևանում կառուցվեց մոտավորապես 250 հազար քառակուսի մետր տարածությամբ բնակարան, իսկ այս տարի պետական կապիտալ ներդրումների հաշվին ռեսպուբլիկայում կկառուցվեն և շահագործման կհանձնվեն մոտավորապես 450 հազար քառակուսի մետր նոր բնակելի տարածություն, ինչպես նաև բազմաթիվ դպրոցներ, հիվանդանոցներ, պոլիկլինիկաներ և այլ կուլտուր-կենցաղային օբյեկտներ։

Սովետական իշխանության տարիներին հիմնովին վերափոխվել և անճանաչելի են դարձել մեր ռեսպուբլիկայի գյուղերն ու քաղաքները։ Լենինականը, Կիրովականը, Ղափանը, Ալավերդին, Հրազդանը իրենց հոյակապ նորակառույցներով, կուլտուր-կենցաղային օբյեկտներով, բազմահարկ ու լուսավոր բնակելի շենքերով ու բարեկարգ, կանաչապատ փողոցներով դարձել են մեր ռեսպուբլիկայի գեղեցիկ քաղաքները։ Նրանց գործարանների ու ֆաբրիկաների արդյունաբերական արտադրանքը ոչ միայն ճանաչում են գտել Սովետական Միության մեջ, այլև նրա սահմաններից շատ հեռու։ Երևանը այժմ համարվում է Սովետական Միության հոյաշեն քաղաքներից մեկը։

Վերջին տարիների ընթացքում զգալիորեն բարձրացել է մեր ժողովրդի կենսամակարդակը, աճել է նրա գնողունակությունը, անցյալ տարիների համեմատությամբ մի քանի անգամ ավելացել է ապրանքաշրջանառությունը, ընդլայնվել ու մասնագիտացվել է առևտրական ցանցը։ Ռեսպուբլիկայում գնալով ավելի լայնորեն են արմատավորվում բնակչության սպասարկման նոր, առաջավոր մեթոդները։ Անցյալ տարվա համեմատությամբ, այս տարվա առաջին կիսամյակում մեր ռեսպուբլիկայի բնակչությանը ավելի շատ կենսամթերք է վաճառվել. ձուկ և ձկնամթերք՝ 126 տոկոս, յուղ՝ 107, կաթ և կաթնամթերք՝ 117, շաքար՝ 119, հրուշակեղեն՝ 113 և մակարոնեղեն՝ 149 տոկոս։ Բնակչությանը վաճառվել է նաև ավելի շատ արդյունաբերական ապրանք. հագուստեղեն և սպիտակեղեն՝ 112 տոկոս, տրիկոտաժեղեն՝ 109, գուլպեղեն՝ 126, կաշվե կոշիկ՝ 107, սառնարան՝ 112, լվացքի մեքենա՝ 129, հեռուստացույց՝ 107 տոկոս։



Անցած կիսամյակում ռեսպուբլիկայի բնակչությունը սպառման հանրային ֆոնդերի հաշվին կրթության, բուժման, կենսաթոշակների, նպաստների և այլ նպաստների համար ստացել է 140 միլիոն ռուբլի։

Աննախընթաց վերելք են ապրում Սովետական Հայաստանի ժողովրդական կրթությունը, գիտությունն ու արվեստը։ Հայաստանը այժմ դարձել է համատարած գրագիտության երկիր։

Մեր ռեսպուբլիկայում ուսման տարբեր ձևերում ընդգրկված է կես միլիոնից ավելի մարդ, հանրակրթական դպրոցներում սովորում է 450 հազարից ավելի աշակերտ։ Ընթացիկ տարում ութամյա դպրոցը ավարտել է մոտ 27 հազար աշակերտ, կամ 4 հազարով ավելի, քան անցյալ տարի, միջնակարգ դպրոցն ավարտել է 7 հազար աշակերտ կամ 2,5 հազարով ավելի, քան անցյալ տարի։ Տարեցտարի զգալի քանակությամբ ավելանում է նաև բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների ուսանողների թիվը։ Միայն անցած տարի ռեսպուբլիկայի բուհերը երկրին ավեցին ավելի քան 2.900 մասնագետ, այդ թվում 471 ինժեներ։ Տեխնիկումները և մյուս միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները տվեցին մոտ 3.500 մասնագետ։

Ռեսպուբլիկայի գիտությունների ակադեմիան իր բազմաթիվ գիտահետազոտական ինստիտուտներով և հիմնարկներով մեծ ճանաչում է գտել ոչ միայն Սովետական Միությունում, այլև նրա սահմաններից դուրս։ Դժվար է գերագնահատել հայ գիտնականների կատարած աշխատանքը։ Գիտության տարբեր բնագավառներում հայ մեծատաղանդ գիտնականները իրենց աչքի ընկնող հայտնագործություններով արժանի ավանդ են մուծում համաշխարհային գիտության գանձարանը։ Նրանք հաջողությամբ մշակում են միջուկային ֆիզիկայի, քիմիայի, աստղագիտության, մաթեմատիկայի, հաշվողական տեխնիկայի, կիբեռնետիկայի, աստրոֆիզիկայի և մի շարք այլ կարևոր պրոբլեմներ։ Գիտական ոչ պակաս կարևոր աշխատանքներ են կատարվում նաև ռեսպուբլիկայի բարձրագույն ուսումնական հաստատություններում։ Սովետական Հայաստանի գիտնականների բազմահազարանոց բանակը ջանք չի խնայում մարդկության բարօրության կարգացման հայրենանվեր աշխատանքում։

Սովետական իշխանության տարիներին արմատապես վերափոխվեց Հայաստանի կուլտուրական կյանքը։ Այժմ ռեսպուբլիկայում ստեղծված է կինոթատրոնների, ակումբ-գրադարանների խիտ ցանց։ Բավական է ասել, որ մեր գյուղերում ու քաղաքներում այժմ գործում են 853 ակումբ, այդ թվում՝ 67 կուլտուրայի տուն ու պալատ, 778 գրադարան՝ 12 միլիոն 514 հազար կտոր գրքային ֆոնդով, 19 թանգարան, 26 հանգստի ու կուլտուրայի զբոսայգի և այլն։ Ռեսպուբլիկայի աշխատավորների համար լայն հնարավորություններ են ստեղծված նրանց կոմունիստական աշխարհայացքի զարգացման և հոգևոր կուլտուրայի հարստացման ասպարեզում։

Տասնյակ հազարավոր աշխատավորներ հանդիսանում են կենտրոնական, ռեսպուբլիկական, միջշրջանային թերթերի և ամսագրերի բաժանորդներ։ Տարեցտարի ավելանում է թերթերի, ամսագրերի ու գրքերի տպագրության քանակը. դրանք լույս են ընծայվում ոչ միայն հայերեն, այլև ռուսերեն, ադրբեջաներեն և քրդերեն լեզուներով։ Աննախընթաց վերելք են ապրում նաև արվեստն ու գրականությունը։ Վերջին տարիների ընթացքում մեր անվանի գրողների ու արվեստագետների համաստեղությունը համալրվեց նոր, երիտասարդ շնորհալի ստեղծագործողներով։ Հայ գրողները, կոմպոզիտորները, նկարիչներն ու քանդակագործներն իրենց ստեղծած արժեքավոր գործերով անգնահատելի ավանդ են մուծում մեր ժողովրդի հոգևոր կուլտուրայի զարգացման, կոմունիզմ կառուցող նոր մարդու աշխարհայացքի ձևավորման գործում։

Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում ձեռք բերած վիթխարի նվաճումներն ու հաջողությունները է՛լ ավելի են ուժեղացնում սփյուռքահայ աշխատավորների ձգտումը դեպի մայր հայրենիք։ Մեր պարտիայի ու կառավարության հոգատարության շնորհիվ ամեն տարի Կիպրոսից, Եգիպտոսից, Իրանից, Լիբանանից և ուրիշ երկրներից Սովետական Հայաստան են վերադառնում բազմաթիվ հայերի նորանոր քարավաններ, որոնք հայրենի հարկի տակ իրենց մշտնջենական օջախն են հաստատում։ Սովետական Հայաստանը հարազատ մոր պես խանդաղատանքով ու գրկաբաց է ընդունում իր պան-



դուխտ որդիներին ու դուստրերին։ Պարտիան ու կառավարությունը նրանց համար ստեղծում են կենցաղային, աշխատանքային և կրթություն ստանալու լավագույն պայմաններ։ Այժմ նրանք հարազատ հայրենիքում ակտիվ մասնակցություն են ունենում մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցման, ժողովրդական տնտեսության աննախընթաց վերելքի մեծ ու պատվավոր գործին։

Մեծ Հոկտեմբերի կենարար շողերի տակ զորանում, է՛լ ավելի է բարգավաճում Սովետական Հայաստանը։ Մեծ Հոկտեմբերը, Լենինի հանճարով ստեղծված կոմունիստական պարտիան հայ ժողովրդին փրկեցին ոչ միայն ֆիզիկական բնաջնջումից, այլև մեր ժողովրդի համար ստեղծեցին ստեղծագործելու ու զարգանալու իսկական պայմաններ։

Ցարական Ռուսաստանի նախկին, հետամնաց գաղութ, դաշնակների կողմից ավերված Հայաստանի փոխարեն այսօր վեր է խոյացել Սովետական Հայաստանը, իր բարձր զարգացած ժողովրդական տնտեսությամբ, գիտությամբ, ու կուլտուրայով։

Ամեն տարի արտասահմանյան բազմաթիվ երկրներից մեր ռեսպուբլիկա են ժամանում քաղաքական գործիչներ, գրողներ, գիտնականներ, բանվորներ։ Ինչպես Սովետական Միություն, այնպես էլ Սովետական Հայաստան այցելող արտասահմանյան հյուրերին հետաքրքրում է տեսնել այն նորը, որ ստեղծված է սովետական իշխանության տարիներին։

Ծանոթանալով Սովետական Հայաստանի ձեռք բերած նվաճումներին, Ցեյլոնի աշխատանքի ֆեդերացիայի գլխավոր քարտուղարը հայտարարել է. «Մենք եկել ենք ձեր երկիրը, որպեսզի ծանոթանանք ազգային հարցի դրվածքին, մասնավորապես մեծ տերությունում փոքր ժողովուրդների վիճակին։ Հայաստանի օրինակով կարելի է համարձակ կերպով ասել, որ այդ կարևոր հարցը ձեզ մոտ դրական լուծում է ստացել։ Դրանից մենք հիանալի օրինակ ենք վերցնում Ցեյլոնի ժողովուրդների համար»։

Մեր արտասահմանյան բոլոր բարեկամները խոր հիացմունքով են վերաբերվում Սովետական Հայաստանի ձեռք բերած նվաճումներին։ Նրանք Սովետական Հայաստանի օրինակով պարզ պատկերացում են կազմում այն մասին, թե ինչ հսկայական նվաճումների կա-

րող է հասնել այն ժողովուրդը, որը հաջողությամբ կառուցում է սոցիալիստական հասարակարգ և ազատ է իմպերիալիստական գիշատիչ շահագործումից ու թալանից։ Այստեղ չի կարելի չհիշատակել «Իտալիա—ՍՍՌՄ» ընկերության պատվիրակության անդամ Էթորե Մաթեանի այն խոսքերը, թե «Հայաստանում մենք սեփական աչքերով տեսանք սոցիալիզմը գործողության մեջ։ Այդ փոքր երկիրը ինձ շատ բանով զարմացրեց։ Ես երբեք չէի կարծում, թե այսքան կարճ ժամանակաշրջանում կարելի է հասնել ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի այնչափ բարձր մակարդակի»։

Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության, գիտության, կուլտուրայի և ժողովրդական կրթության բնագավառներում ձեռք բերած այս վիթխարի հաջողությունները կոմունիստական պարտիայի լենինյան ազգային իմաստուն քաղաքականության արդյունքն են։ Այսօր էլ ավելի են ամրապնդվում ու զարգանում Սովետական Միության ժողովուրդների բարեկամությունն ու փոխադարձ համագործակցությունը։ Թե ինչ է նշանակում այդ, ակնառու կերպով երևում է Սովետական Հայաստանի օրինակով։ Երևանի ջերմաէլեկտրակայանի շինարարությունը ՍՍՌՄ ժողովուրդների ինտերնացիոնալ աշխատանքային համագործակցության վառ օրինակ է։ Այդ ջերմաէլեկտրակայանի կառուցմանը մասնակցում են ՌՍՖՍՌ-ի, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Լատվիայի, Ադրբեջանի, Վրաստանի, Էստոնիայի բազմաթիվ արդյունաբերական ձեռնարկություններ, բանվորներ ու մասնագետներ։ Ռեսպուբլիկայի մեծ քիմիայի հսկաներից մեկի՝ Կիրովականի արհեստական մանրաթելի գործարանի կառուցման աշխատանքներին մասնակցել են միութենական բոլոր ռեսպուբլիկաների 248 ձեռնարկություններ ու կազմակերպություններ։

Բնակչության ինտերնացիոնալ դաստիարակության գործում մեծ տեղ է գրավում եղբայրական մյուս ռեսպուբլիկաների աշխատավորների հետ սոցիալիստական մրցության ծավալումը, որը ժողովուրդների լենինյան անխախտ բարեկամության կոնկրետ և վառ դրսևորումներից է։



Վ. Ի. Լենինը իր «Ինչպես կազմակերպել մրցությունը» հայտնի հոդվածում ձևակերպել է սոցիալիստական մրցության գլխավոր սկզբունքները։ Դրանք են փոխադարձ ընկերական օգնությունը, առաջավոր փորձի ընդօրինակումը և մրցության արդյունքների մասսայական քննարկումը։ Սովետական ռեսպուբլիկաների աշխատավորների միջև ծավալված սոցիալիստական մրցությունը լենինյան այս սկզբունքների կենդանի մարմնացումն է։

Սովետական Հայաստանի և մյուս եղբայրական ռեսպուբլիկաների աշխատավորների միջև օրեցօր ծավալվող սոցիալիստական մրցությունը կրում է մասսայական բնույթ։ Երևանի աշխատավորները մրցում են Կիևի, Բաքվի և Թբիլիսիի աշխատավորների հետ, Լենինականը՝ Քութայիսիի և Կիրովաբադի, Կիրովականի աշխատավորները՝ Սումգայիթի, Քութայիսի և Սուխումիի աշխատավորների հետ։ Մրցում են նաև Անիի շրջանի և Կրասնոդարի մարզի Ուստ-Լաբինսկի, Արտաշատի շրջանի և Ուկրաինական ՍՍՌ Բոլշե-Ալեքսանդրովսկի շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները։

Օր-օրի աճում և ամրապնդվում են ՍՍՌՄ ժողովուրդների կուլտուրական կապերը։ Մեր ռեսպուբլիկայի կուլտուրական կյանքում հիանալի իրադարձություն էին հայկական գրականության ու արվեստի տասնօրյակը Ուզբեկական ՍՍՌ-ում և ուզբեկական գրականության և արվեստի տասնօրյակը Հայաստանում, ՌՍՖՍՌ-ի, Ուկրաինայի, Վրաստանի, Ադրբեջանի, Լիտվայի կերպարվեստի վարպետների ցուցահանդեսների կազմակերպումը, Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի օպերային թատրոնների գաստրոլները և այլն։

Մեր լայնածավալ հայրենիքի բոլոր ժողովուրդները, Սովետական Հայաստանի աշխատավորների հետ միասին, որպես կուլտուրայի մեծ տոն, նշեցին Մեսրոպ Մաշտոցի ծննդյան 1600-ամյակը և Սայաթ-Նովայի ծննդյան 250-ամյակը։ Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները սիրով նշեցին եղբայրական ժողովուրդների

կուլտուրայի մեծ գործիչներ Պուշկինի, Բրյուսովի, Լեսի Ուկրաինկայի, Ստանիսլավսկու, Վաժա Փշավելայի, Ախունդովի, Սաբիրի հոբելյանական տարելիցները։ Վերջերս մեր ռեսպուբլիկայում մեծ հանդիսավորությամբ նշեցինք ուկրաինական ժողովրդի մեծ զավակ Տ. Գ. Շևչենկոյի ծննդյան 150-ամյակը, ռուսական տպագրության 400-ամյակը, ռուս մեծ բանաստեղծ Մ. Յու. Լերմոնտովի ծննդյան 150-ամյակը։

Այս տարվա հունիսին Էստոնիայում կազմակերպվեց հայկական արվեստի շաբաթ, իսկ սեպտեմբերին մեր ռեսպուբլիկայի աշխատավորները հյուրընկալեցին էստոնական արվեստի վարպետներին։

Մեր ռեսպուբլիկայի գիտնականները եղբայրական մյուս ռեսպուբլիկաների գիտնականների հետ սերտ համագործակցած մշակում են խոշոր նշանակություն ունեցող գիտական պրոբլեմներ։ Անդրկովկասի գիտնականները համատեղ մշակել են Վրացական, Ադրբեջանական և Հայկական ՍՍՌ-ների էներգոսիստեմների միավորման գիտական հիմունքները։

Սովետական մեծ Միությունը հզոր է նրա կազմի մեջ մտնող եղբայրական ժողովուրդների անխախտ լենինյան բարեկամությամբ։ Եվ կոմունիզմի կառուցման ճանապարհին յուրաքանչյուր նոր քայլ հանդիսանում է այդ բարեկամության իսկական դրսևորումը։

44 տարեկան է Սովետական Հայաստանը։ Պատմական այդքան շատ կարճ ժամանակաշրջանում մեր ժողովուրդը մոխիրներից դուրս գալով կերտել է իր երջանիկ կյանքը։ Ու այժմ էլ Սովետական Միության եղբայրական բոլոր ժողովուրդների հետ միասին Սովետական Հայաստանի աշխատավորները գործի են դնում իրենց բոլոր ուժերն ու եռանդը կոմունիստական պարտիայի կողմից մշակված կոմունիզմի կառուցման ծրագիրը մեր երկրում իրագործելու համար։





# ՄԿՐՏՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

**Հարց.** Վնասակա՞ր է արդյոք մկրտությունը, եթե այն կատարվում է սանիտարական լավ պայմաններում։

**Պատասխան։** Երբ հարցն այսպես են դնում, ապա սովորաբար կարծում են, որ մկրտությունը մանկան չամրացած օրգանիզմին միայն ֆիզիկական վնաս է պատճառում։ Իրոք, այդ ծիսակատարությունը վնասակար է երեխաների առողջության համար։ Գաղտնիք չէ, որ մկրտությունը ամենուրեք կատարվում է հակասանիտարական պայմաններում։ Շատ հաճախ մի քանի երեխաների մկրտում են միևնույն ջրում, իսկ նրանց մեջ կարող են հիվանդներ լինել։ Դա երբեմն մաշկի հիվանդությունների պատճառ է դառնում։ Պատահում է, որ երեխաները վարակվում են մաշկային հիվանդություններով՝ նրանց մեռոն օծելու հետևանքով։ Հայտնի են մանուկների մրսելուց առաջացած հիվանդությունների ոչ քիչ դեպքեր, երբ նրանց մկրտել են սառը ջրում։ Եվ պատահում է, որ այդ ծիսակատարումը ավելի քան ողբալի վախճան է ունենում։ Վերջերս մեր մամուլում հաղորդվեց Ուրալի Զլատոուստ քաղաքում մի երեխայի՝ Վովա Մարչենկոյի ողբերգական մահվան մասին, որը մկրտման ժամանակ ջուր էր կուլ տվել։ Եվ այդպիսի դեպքերը եզակի չեն։ Մեր լրագրերում քիչ չի լինում, որ կարդում ես այն մասին, թե ինչ ցավալի վախճան է ունենում մկրտումը եկեղեցում։ Դա քայքայում է երեխաների առողջությունը, և լինում է, որ նրանց կորստյան է հասցնում։

Դե լավ, մեզ կառարկի հավատացյալը, իսկ եթե, այնուամենայնիվ, մկրտությունը կատարվում է սանիտարական լավ պայմաններու՞մ։

Այդ պայմաններն էլ չեն արդարացնում այդ ծիսակատարումը։ Չէ՞ որ այն վնասակար է ոչ միայն բժշկական տեսակետից։ Մկրտության ավելի քան մեծ վնասը կայանում է նրանում, որ այն ամրացնում է ամենատգետ պատկերացումները, ստրկական հոգեբանություն է պատվաստում։ Մի՞թե մարդու համար ստորացուցիչ չէ, երբ նրան համարում են մի էակ, որը «մեղավոր» է բնությունից, ստրուկ՝ ի ծնե։ Մի՞թե մար-

դու արժանապատվությունը չի ստորացնում այն, որ քահանան մկրտելիս նրան անվանում է աստծու ստրուկ։

Քրիստոնեական եկեղեցու սպասավորները հատուկ, բացառիկ նշանակություն են տալիս մկրտությանը։ Նրանք պնդում են, որ այդ ծեսը սահմանել է ինքը՝ Հիսուս Քրիստոսը։ Նա մկրտվել է Հորդանան գետում, իսկ երկինք համբարձվելուց հետո իր աշակերտներին պատվիրել՝ «գնացեք, սովորեցրեք բոլոր ժողովուրդներին, մկրտելով նրանց հանուն հոր և որդու և սուրբ հոգու»։

Քրիստոնեական կրոնը հավատացյալներին ներշնչում է, որ յուրաքանչյուր մարդ ի ծնե արատավորված է «նախնական մեղքով», որը նրան չարչարանքի է մատնում երկրային կյանքում։ Այդ մեղքից մարդիկ կարող են մաքրվել իբր թե միայն մկրտման օգնությամբ։

Այդ «սուրբ» սովորույթը կատարելով, մարդը, ըստ քրիստոնեական եկեղեցու սպասավորների խոսքերի, կարծես նորից է ծնվում, «մեռնում է մարմնական, մեղսալի կյանքի համար և վերածնվում է հոգևոր ու սուրբ կյանքում»։ Միայն մկրտված մարդը կարող է ընդունվել քրիստոնեական եկեղեցու գիրկը, կարող է համարվել «ճշմարիտ քրիստոնյա»։

Բայց չէ՞ որ մկրտման խորհուրդը ամենևին այնպիսի մի ծիսակատարություն չէ, որ հատուկ է միայն քրիստոնեությանը։ Ջրալվացումը՝ դա մնացուկ է հին վայրենական այն հավատալիքների, որոնք կապված էին ջրի երկրպագման հետ։

Աստվածացնելով բնության առարկաներն ու երևույթները, նախնադարյան մարդիկ աստվածացնում էին նաև ջուրը, նրան վերագրելով հատուկ, գերբնական հատկություններ։ Դրանում զարմանալի ոչինչ չկա, որովհետև ջուրը միշտ էլ մարդու կյանքի կարևորագույն աղբյուրն է հանդիսացել։ Նա մարդկանց անհրաժեշտ է եղել ծարավը հագեցնելու համար, ջրից էր կախված դաշտերի ու արոտավայրերի արգավանդությունը, իսկ հաճախ էլ նա սպառնալիք էր դառնում մարդու կյանքի համար, ինչպես այդ լինում էր կործանիչ տեղատարափ անձրևների, ջրհեղեղների, գետերի վարարումների ժամանակ։

Ջրի կարևոր, օգտակար հատկությունների առաջ խոնարհվելը հին մարդկանց մեջ առաջ էր բերում ջրի



հետ կապված մի ամբողջ շարք կախարդական ծեսային գործողություններ։ Նրանցից մեկը՝ մարդու «մաքրվելն» էր ամեն տեսակ «անմաքրությունից»։ Նախնադարյան մարդիկ սկսեցին հավատալ, որ ջուրը կարող է մարդուն մաքրել չար ոգիներից, որոնք իբր թե մարդկանց պատճառում են հիվանդություններ, դժվարություններ, չարչարանքներ, մահ։ Չար ոգիները, մեր հեռավոր նախնիների կարծիքով, հատկապես ակտիվ էին լինում մարդու ծնվելիս, նրա հասունացման և մահվան պահերին։ Հենց այդ շրջաններում էլ հարկավոր է կատարել ջրով մաքրման ծեսերը։

Հին ժամանակներում ջրով «մաքրման» ծեսը ուղեկցվում էր զանազան կախարդական գործողություններով։ Օրինակ, լվանալով նորածնին, կախարդը փչում ու թքում էր, հավատալով, որ իր շունչը և թուքը մոգական ուժ ունեն չար ոգիների դեմ։ «Մաքրելու» ժամանակ սրբազնագործ պաշտոնյաները կտրում էին երեխայի մազերը, որոնք զոհաբերվում էին ոգիներին։ Մարդիկ կարծում էին, որ այդ զոհի շնորհիվ նրանք սերտ կապի մեջ են մտնում հզորագույն ոգիների հետ։

Իսկ ինչո՞վ են տարբերվում հին մարդկանց այդ կախարդական գործողությունները քրիստոնեական քահանայի գործողություններից, որը կնքահորը առաջարկում է երեխայի կողմից «փչել ու թքել» սատանայի վրա։ Ինչո՞վ է տարբերվում նորածնի մազերը չար ոգիներին զոհաբերելը մեր օրերում մկրտման ժամանակ կատարվող երեխայի մազերը խուզելուց։ Ոչնչով։

Այդպիսով, կատարելով մկրտման ծեսը, մարդիկ միայն կրկնում են հին վայրենական այն ծիսակատարությունը, որը սրանից հազարամյակներ առաջ գոյություն ուներ նախնադարյան մարդկանց մեջ։ Եվ իհարկե, մկրտման ծիսակատարությունը ոչ մի օգուտ, ոչ մի երջանկություն չի բերում մարդուն։ Բոլորովին այլ է նրա դերը. այդ ծիսակատարությունը երեխայի ծնողների մեջ սնահավատ երկյուղ է պատվաստում նրա ճակատագրի նկատմամբ, պատվաստում է այն բանի հավատը, որ երեխաների երջանկությունը քրիստոնեական եկեղեցուց է կախված։ Եվ միայն այդ էլ հարկավոր է եկեղեցու հոգևոր հովիվներին, որոնք ձգտում են բոլոր միջոցներով մարդկանց իրենց ազդեցության տակ պահել։

Ոչ, ոչ թե «այն աշխարհում», այլ երկրային կյան-

ճում է պատրաստված յուրաքանչյուր սովետական մարդու երջանկությունը: Մեր ժողովուրդը ինքն է ստեղծագործում իր երջանկությունը, հույս չդնելով աստծու օգնության, աստծու ողորմածության վրա: Սովետական երեխաները— դա մարդկության պատմության մեջ ամենագեղեցիկ հասարակությունը կառուցողների աճող հերթափոխն է, մի հասարակություն, որում յուրաքանչյուր մարդու սեփականությունը կդառնան կյանքի բոլոր բերկրությունները: Եվ հարկավոր չէ այդ երեխաներին ու նրանց ծնողներին պատվաստել այն տգետ պատկերացումները, որոնք մեզ ժառանգություն են մնացել մռայլ անցյալից. ստորացնել նրանց արժանապատվությունը՝ ոչ-պիտանի և վնասակար կրոնական ծեսերի կատարմամբ:

Քննադատելով ուղղափառ եկեղեցուն այն բանի համար, որ նա մարդուն մկրտում է մանուկ հասակում, երբ նա դեռևս ընդունակ չէ գիտակցել իր միակցումը Քրիստոսի թագավորությանը, որոշ աղանդավորներ (օրինակ՝ բապտիստները) կատարում են չափահասների մկրտություն: Կարելի՞ է արդյոք համարել, որ այդ քիչ է վնասակար ու վտանգավոր: Ոչ մի դեպքում: Չէ՞ որ աղանդավորական քարոզիչների ճառերով խճճված մարդուն թվում է, որ նա այդ բանն անում է հստակ մտքով, համոզվածությամբ և լիակատար գիտակցորեն: Բայց նա այդ անելիս իր մոլորությունն ընդունում է ճշմարտության տեղ և խաբում է ինքն իրեն: Ուստի մկրտությունը աղանդավորների մոտ բոլորովին էլ ոչ թե լավ, այլ երբեմն ավելի վնասակար է, քան մանուկների մկրտությունը ուղղափառ եկեղեցում:

«Պատասխաններ հավատացյալներին»
գրքից



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Սովետական Հայաստանը մեծ Հոկտեմբերի ծնունդն է

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Հեռագիր Հայաստանի ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի նախագահին, *Երկեր, հատոր 31, էջ 550, Հայպետհրատ, 1952:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին, *Երկեր, հատոր 32, էջ 402—405, Հայպետհրատ, 1952:*

ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ—Հայաստանի կոմպարտիայի գործունեությունը ժողովրդական տնտեսության հետագա զարգացման բնագավառում, *ՀԿՊ XXIII համագումարին տված զեկուցումից, էջ 8—16, Հայպետհրատ, 1964:*

## 2. Ծաղկում և բարգավաճում է Սովետական Հայաստանը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հայաստանի կոմունիստական պարտիայի XXIII համագումարի բանաձևը ՀԿՊ Կենտկոմի հաշվետու զեկուցման առթիվ, *Հայպետհրատ, 1964:*

Սովետական Հայաստանը թվերով և փաստերով, *Հայպետհրատ, 1962:*

Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1963 թվականի պետական պլանի կատարման արդյունքների մասին, *Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. հունվարի 28-ի համարում:*

Հայկական ՍՍՌ արդյունաբերության 1964 թվականի ինն ամսվա պետական պլանի կատարման արդյունքների մասին, *Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հոկտեմբերի 24-ի համարում:*

## 3. Գիտության, կուլտուրայի և ժողովրդական կրթության զարգացումը Հայկական ՍՍՌ-ում

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ—Ժողովրդական կրթություն, *Հայաստանի*

*կոմունիստական պարտիայի XXIII համագումարին տված հաշվետու զեկուցումից, էջ 65—73, Հայպետհրատ, 1964։*

Վ. Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ—Գիտությունը Հայաստանում 40 տարում, *առանձին բրոշյուր, Հայկական ՍՍՌ ԳԱ հրատարակություն։*

## 4. Մեր ուժերն ու եռանդը նվիրաբերենք պարտիայի առաջադրած խնդիրների կենսագործմանը

### *ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

ՍՄԿՊ ծրագիրը, *Հայպետհրատ, 1961։*

ՍՄԿՊ Կենտկոմի կոչերը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 47-րդ տարեդարձի առթիվ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. հոկտեմբերի 18-ի համարում։*

ՍՄԿՊ լենինյան անսասան գլխավոր գիծը, *«Պրավդա» թերթի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. հոկտեմբերի 18-ի համարում։*

Մեր ինդուստրիան ընթանում է առաջ, *«Պրավդա» թերթի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. հոկտեմբերի 23-ի համարում։*

## 5. Անցերի կատարենք ստանձնած պարտավորությունները

### *ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

ՍՍՌՄ արդյունաբերության 1964 թ. ինն ամսվա պետական պլանի կատարման արդյունքների մասին, *ՍՍՌՄ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. հոկտեմբերի 22-ի համարում։*

Հայկական ՍՍՌ արդյունաբերության 1964 թ. ինն ամսվա պետական պլանի կատարման արդյունքների մասին, *Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. հոկտեմբերի 24-ի համարում։*

Վճռական օրեր կառույցներում, *«Պրավդա» թերթի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. հոկտեմբերի 30-ի համարում։*

Մեր ինդուստրիան ընթանում է առաջ, *«Պրավդա» թերթի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. հոկտեմբերի 23-ի համարում։*

Կոմունիստական շարժմանը՝ կոնկրետ ղեկավարում, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. հոկտեմբերի 21-ի համարում։*

Զրույցի ընթացքում ճարկավոր է օգտագործել նաև տվյալ արդյունաբերական ձեռնարկության, կոլտնտեսության և սովխոզի ստանձնած պարտավորությունների կատարման վերաբերյալ տվյալներ։



## ՔԻՄԻԱՅԻ ԲԱՐԻՔՆԵՐԸ

⌗ *Շերամի մեկ որդը իր կարճատև կյանքում ստեղծում է մեն բոժոժ։ Ֆաբրիկայում այն մշակելուց և կծկելուց հետո ստացվում է 0,5 գրամ մետաքսաթել։ 1000 մետաքսե հագուստ կարելու համար հարկավոր է աճեցնել մեկ միլիոն շերամորդ։ Իսկ ամենանուրբ տեսակի 1000 զույգ գուլպա գործելու համար՝ 80.000 շերամորդ։ Մինչդեռ նույն արտադրանքը կարելի է ստանալ 80 կիլոգրամ փայտից։*

⌗ *Հազար ձեռք բրդե կոստյումի կտորը մշակվում է 50 ոչխարից խուզած բրդից։ Այդ ոչխարները աճեցնելու համար հարկավոր է երկու տարի։ Յուրաքանչյուր տոննա բրդի թել արտադրելու համար կորչում է մոտ 620 մարդ-օր։ Բայց հազար կոստյում, բրդից ոչ պակաս որակով ու դիմացկուն, մեզ կարող է նվիրել 2 խորանարդ մետր մշակված փայտը։ Ըստ որում աշխատանքային ծախսերն էլ գրեթե տասը անգամ ավելի պակաս են, քան բրդե կտորի ստացման պրոցեսի ժամանակ։*

⌗ *Մեկ տոննա էթիլեն գազը և երկուսուկես տոննա քլորը հրաշք-գործարաններում վեր են ածվում կանացի և տղամարդու հագարավոր ձեռք սպիտակեղենի։*

⌗ *Մեկ տարվա ընթացքում տիպային գործարանը թողարկում է մոտ 40.000 տոննա շտապելային մանրաթել, որը պատրաստվում է բնական գազից։ Դա այնքան գործվածք է, որքան վուշե կտավ էր արտադրվել 1955 թվականին ամբողջ Բելոռուսական ՍՍՌ-ում ըստացված վուշի բերքից։*

⌗ *Էնանտի մանրաթելի մեկ տոննան 10 անգամ ավելի էժան է, քան մեկ տոննա բնական բուրդը։*

⌗ *Մեկ կովի կամ եզան կաշվից ստանում են 40 զույգ կոշկի ներբան։ 20 զույգ կոշկի երես պատրաստելու համար հարկավոր է մեկ հասուն խոզի կամ ոչխարի կաշի։ Որպեսզի մեր երկրի յուրաքանչյուր քաղաքացի ապահովվի միայն մեկ զույգ կաշվե կոշիկով, պահանջվում է ավելի քան հինգ միլիոն խոշոր եղջերավոր անասունի և ութ միլիոն խոզի կամ ոչխարի կաշի։ Դա 1932 թվականի կոլտնտեսություններում եղած խոշոր ու մանր եղջերավոր անասունների և խոզերի ամբողջ գլխաքանակի գրեթե կեսն է։*

⌗ *Մինչդեռ, ամենատարբեր տեսակների ու ձևերի բարձրորակ կաշի են պատրաստում գազից։ Արհեստական կաշի արտադրելու ժամանակակից մակարդակն արդեն թույլ է տալիս «տնտեսելու» 30 միլիոն գլուխ անասուն։*

# ԿԱՐԴԱՑԵՔ ԱՅՍ ԳԻՐՔԸ

*«Նշանավոր մարդկանց կյանքը» մատենաշարով Ս. Սարգսյանի հեղինակությամբ Հայպետհրատը լույս է ընծայել փառաբանված ռևոլյուցիոներ Սուրեն Սպանդարյանին նվիրված մենագրություն։*

*Բազմազան փաստերի հակիրճ ու աշխույժ շարադրանքով հեղինակն ընթերցողին է ներկայացնում մարքս-լենինյան տիպի հրաշունչ պրոպագանդիստին, մեծատաղանդ հրապարակախոս-ժուռնալիստին, ռևոլյուցիոն պայքարի առաջամարտիկին՝ էջ առ էջ թերթելով նրա դժվար, բայց պանծալի կյանքի տարեգրությունը։*

*Հեղինակը պատմում է, թե ինչպես գաղափարական մկրտություն ստանալով ռուսական պրոլետարիատի ռևոլյուցիոն ավազանում, կոփվելով ու դաստիարակվելով բոլշևիկյան պարտիայի շարքերում, Սուրեն Սպանդարյանը ցարիզմի և բուրժուազիայի դեմ մղած համառ պայքարում նվաճում է բանվոր դասակարգի սերն ու համակրանքը, դառնում նրա ականավոր գործիչներից մեկը։ Նրա անունն ամենից առաջ սերտորեն կապվում է Անդրկովկասի եղբայրական ժողովուրդների հեղափոխական պայքարի պատմության հետ։ Անհողդողդ բոլշևիկի համար չի եղել ավելի մեծ բախտ ու երջանկություն, քան ճնշված ու հարստահարված ժողովուրդների ազատագրմանը, նրանց ինտերնացիոնալ կապերի ամրապնդմանն անձնուրաց ծառայելը։*

*Ամենուրեք, որտեղ ապրել ու շնչել է Սուրեն Սպանդարյանը՝ Ռուսաստանում, Անդրկովկասում, թե հեռավոր սառցաշունչ Սիբիրում, իր հոգում և արյան մեջ կրել է ժողովուրդների մեծ ազատարար Վ. Ի. Լենինի անունը, մարտնչել մարքսիզմ-լենինիզմի դրոշով։ Վաղ երիտասարդական-ուսանողական տարիներից ընդհուպ մինչև ռևոլյուցիոն հասուն գործունեությունը, Սուրեն Սպանդարյանը սրբությամբ է կատարում ժողովուրդների բարեկամության ու համագործակցության ուխտը, իր անձնվեր օրինակով խանդավառում ժամանակակից և գալիք սերունդներին։*

*Անմահ ռևոլյուցիոների մահից մեկ տարի հետո, 1917 թ. հոկտեմբերին, «Ավրորայի» աշխարհացունց համազարկերով սկիզբ դրվեց մարդկության նոր, փառահեղ դարաշրջանին՝ Լենինի հանճարով լուսավորված սոցիալիստական պետությանը։ Հաղթանակով պսակվեց այն մեծ համաժողովրդական գործը, որի համար ապրեց, մարտնչեց, ընկավ լենինյան անպարտելի բանակի լեգենդար ասպետը։*

*Սուրեն Սպանդարյանի փոթորկաշունչ կյանքից տասնամյակներ են անցել, սակայն այսօր էլ լեգենդար սխրագործություններով լի նրա կյանքն ու գործունեությունը ուսանելի և դաստիարակչական մեծ նշանակություն ունեն։ Ուստի նրա կարճ, բայց մեծ կյանքն արտացոլող այս գիրքը լավ նվեր է կոմունիստական հասարակարգ կառուցող մեր երիտասարդությանը։*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## СОДЕРЖАНИЕ




**Խմբագրության հասցեն.—** *Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78։*

**Адрес редакции —** Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71. телефон 2-52-78.

ԻՆԴԵՔՍ՝ 77704



ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ
ЦК КП АРМЕНИИ

# Агитатори блокнот

## № 21
## 1964

Խմբագիր՝ Վ. Խ. ՍՆԳԻԲԱՐՅԱՆ

ՎՖ 10602 Պատվեր 1074 Տիրաժ 8938

Հանձնված է արտադրության 30/X 1964 թ.։
Ստորագրված է տպագրության 5/XI 1964 թ.։

ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության II տպարան,
Երևան, Կնունյանցի № 8։
Գինը 8 կոպ.։